Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ






№ 24 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1955

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





# ԼՈՒՐՋ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹՅԱՆԸ

Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

ՀԿՊ Կենտկոմի ագիտացիայի սեկտորի վարիչ

*Քաղաքական ագիտացիայի բարձր գաղափարական մակարդակը, նրա նպատակասլաց և բովանդակալից լինելն ամենից առաջ կախված է ագիտատորների պատրաստականությունից և ագիտացիոն աշխատանք տանելու նրանց վարպետությունից։ Ուստի ագիտատորների ճիշտ ընտրությունը ագիտկոլեկտիվներն ամրապնդելու և աշխատավորների լայն շրջանում քաղաքական-բացատրական աշխատանքն ուժեղացնելու կարևորագույն միջոցներից մեկն է։*

*Ճիշտ են վարվում այն սկզբնական պարտիական կազմակերպությունները, որոնք քաղաքական ագիտացիա մղելու գործի մեջ համարձակորեն ներգրավում են արտադրության առաջավորներին ու նորարարներին,*





ինժեներա-տեխնիկական աշխատողներին, գյուղատնտեսության մասնագետներին, ցեխերի պետերին, ֆերմաների վարիչներին, տրակտորային և դաշտավարական բրիգադների բրիգադիրներին։

Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկայի սկզբնական պարտիական կազմակերպության ագիտատորների թվի մեջ են մտնում, օրինակ, ֆաբրիկայի դիրեկտոր Ա. Մ. Տովգարյովը, հերթափոխության պետեր Մ. Սարգըսյանը, Ս. Գասպարյանը և ինժեներա-տեխնիկական այլ աշխատողներ։

Ագիտատորների նման ընտրությունը միանգամայն ճիշտ է, որովհետև ագիտատորները յուրաքանչյուր պարտիական կազմակերպության ամուր հենարանն են, նրա ակտիվի միջուկը։ Ագիտատորների միջոցով պարտկազմակերպությունը ընդլայնում ու ամրապնդում է իր կապերը մասսաների հետ, ուժեղացնում է քաղաքական ազդեցությունը բնակչության բոլոր խավերի վրա։

Սակայն չպետք է սահմանափակվել միայն ագիտատորների ընտրությամբ։ Որպեսզի ագիտատորները կարողանան հաջողությամբ կատարել իրենց պարտականությունները, անհրաժեշտ է ամենօրյա օգնություն ցույց տալ նրանց։



Երևանի Ավտոդողերի գործարանի սկզբնական պարտիական կազմակերպության աշխատանքում արմատավորվել է ագիտատորների համար որակյալ սեմինարներ անցկացնելու պրակտիկան։ Գործարանի պարտիական կազմակերպությունը սիստեմատիկ սեմինար պարապմունքներ է անցկացնում նրանց հետ։ Սեմինարների թեմատիկան և այն անձանց, ովքեր պետք է անցկացնեն սեմինարները, հաստատում է պարտիական բյուրոն՝ իր նիստում, ընդորում թեմաների ընտրությունը կատարվում է այնպես, որ դրանք շաղկապվեն գործարանի և ցեխի առջև կանգնած խնդիրների հետ։ Ագիտատորների քաղաքական մակարդակը բարձրացնելու համար՝ յուրաքանչյուր սեմինարի ժամանակ կազմակերպվում են դասախոսություններ և զեկուցումներ, որոնք կարդացվում են դրա համար հատկապես հրավիրված որակյալ դասախոսների, ինչպես նաև պարտիական և սովետական ղեկավար աշխատողների կողմից։

Հայտնի է, որ ագիտատորները պետք է լինեն արտադրության առաջավոր փորձի առաջին տարածողները։ Այդ խնդիրը հիմնականում կախված է նրանից, թե պարտիա-

կան կազմակերպությունը ինչպես է ագիտատորներին համապատասխան փաստեր և օրինակներ տրամադրում, նրանց հանգամանորեն պարզաբանում առաջավոր փորձի էությունը։ Օրինակ՝ Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբերյան գյուղի կոլտնտեսային պարտիական կազմակերպությունում անասնապահների մեջ տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքը երկար ժամանակ բարձիթողի էր արված։ Շատ ագիտատորներ անասնապահների հետ իրենց զրույցներն անցկացնում էին վերացականորեն, հաճախ սահմանափակվում էին սոսկ թերթերի առանձին հոդվածների ընթերցումով։ Ֆերմայում վատ էր աշխատանքի կազմակերպումը, անասնապահների առաջավոր փորձը չէր ուսումնասիրվում և չէր տարածվում։ Սկզբնական պարտիական կազմակերպությունը գործն սկսեց նրանից, որ խնամքով ուսումնասիրեց կոլտնտեսության առաջավոր անասնապահների աշխատանքի փորձը և հերթական սեմինարների ժամանակ ագիտատորներին ծանոթացրեց այդ փորձի հետ։ Ագիտատորներին մանրամասնորեն պարզաբանվեց և կոնկրետ օրինակներով ցույց տրվեց, թե ինչպես բարձրացվեց ֆերմայի 50 կովերի կաթնատվությունը։



Սեմինարներից մեկի ժամանակ հանդես եկավ զոոտեխնիկ ընկ. Ա. Հունանյանը, որը ագիտատորներին մանրամասնորեն ծանոթացրեց կովերի խնամքի, կերակրման և կթման առաջավոր փորձին։

Այսպիսով, այդ սեմինարների շնորհիվ ագիտատորները լիակատար պատկերացում ստացան բարձր կաթնատվության հասած անասնապահների առաջավոր փորձի մասին։ Նրանք վերադառնալով ունկնդիրների մոտ, իրենց զրույցների ընթացքում սկսեցին ընդհանուր քաղաքական հարցերը շաղկապել ֆերմայի խնդիրների հետ, համարձակորեն օրինակներ բերելով առաջավոր անասնապահների աշխատանքի դրական փորձից։

Որպեսզի սեմինարը շոշափելի օգուտ տա ագիտատորներին, անհրաժեշտ է յուրաքանչյուր սեմինարի ժամանակ լսել որևէ քաղաքական զեկուցում կամ դասախոսություն հրատապ թեմայի վերաբերյալ։ Ագիտատորներին մեթոդական օգնություն ցույց տալու լավագույն միջոց է նաև սեմինարներում ագիտացիոն աշխատանքի փորձի փոխանակություն կազմակերպելը։

Սեմինարների հետ միասին, բազմազան են ագիտատորների հետ տարվող աշխատանքի այն ձևերը, որոնք լայնորեն կիրառ-

վում են ռեսպուբլիկայի շատ սկզբնական պարտիական կազմակերպություններում՝ ագիտատորների ղեկավարման պրակտիկ աշխատանքում։ Դրանց թվին են պատկանում, օրինակ, ագիտատորների համաքաղաքային, համաշրջանային ժողովներն ու խորհրդակցությունները, որոնց հրավիրումը սովորաբար անհրաժեշտ է դառնում այս կամ այն քաղաքական-տնտեսական կամպանիայի անցկացման ժամանակ։ Ոչ սակավ նշանակություն ունեն նաև ագիտատորների հրահանգավորումները սկզբնական պարտիական կազմակերպություններում։ Մեղրու շրջանի Շվանիձոր գյուղի կոլտնտեսության սկզբնական պարտկազմակերպությունը (քարտուղար՝ ընկ. Գ. Մ. Խաչատրյան) որակյալ սեմինարներից բացի, ամեն շաբաթ ագիտատորների համար կազմակերպում է հրահանգավորում, որի ժամանակ ագիտատորներին հաղորդվում են անցած շաբաթվա ընթացքում ձեռք բերված աշխատանքային հաջողությունները, եղած թերությունները և պարզաբանվում են ագիտատորների խնդիրները։

Մի շարք տեղերում, օրինակ Երևան քաղաքի Միկոյանի և Ստալինյան շրջաններում, Շահումյանի շրջանում և այլն, պրակտիկա



է դարձել ագիտատորների ուսուցման կազմակերպումը ագիտատորների հատուկ դըպրոցներում, որոնք ստեղծվում են պարտիայի շրջկոմների պարտիական գրադարանների կողմից 2—3 ամսով։

Ագիտատորներին օգնելու համար մեծ նըշանակություն ունի նաև գրադարաններին կից ագիտատորի անկյան ստեղծումը, որտեղ կենտրոնացվում են ագիտատորների ինքնապատրաստման համար անհրաժեշտ գրականություն, թերթերից և ամսագրերից կտրած հոդվածներ, թվեր ու փաստեր, որոնք կարող են օգտագործվել ագիտատորների զրույցների ժամանակ։

Ագիտացիոն-մասսայական աշխատանքի գաղափարական-քաղաքական մակարդակի բարձրացման խնդիրը հրամայաբար պահանջում է, որ պարտիական կազմակերպությունները և, մասնավորապես, ագիտկոլեկտիվների ղեկավարները լրջորեն զբաղվեն ագիտատորների ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության հարցերով։

———

# Ի ՊԱՏԻՎ ՊԱՐՏԻԱՅԻ 20-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ

## (Թվեր և փաստեր)

*Ռեսպուբլիկայի ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում և մեքենա-տրակտորային կայաններում բուռն թափով ծավալվում է պարտիայի XX համագումարի պատվին կազմակերպված սոցիալիստական մրցությունը։ Աշխատավորները ջանք չեն խնայում պարտիայի XX համագումարը արժանավայել կերպով դիմավորելու համար։*

✪ *Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը նոյեմբերի 20-ին կատարեց հնգամյա պլանը։ Գործարանում այս տարի, 1940 թվականի համեմատությամբ, արտադրանքի թողարկումն ավելացել է 109 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 106 տոկոսով, արտադրանքի ինքնարժեքն իջել է 52,5 տոկոսով։*

✪ *Երևանի «Պոլիվինիլացետատ» գործա-*



*րանի կոլեկտիվը նոյեմբերի 21-ին կատարելով հնգամյա պլանը, արտադրանքի թողարկումը, 1944 թվականի համեմատությամբ, ավելացրել է 48 տոկոսով։ Տնտեսված է մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա և վառելանյութ։*

✪ *«Ավելի շատ կաշվեղեն կոշիկի ձեռնարկություններին», այս նշանաբանով է աշխատում Երևանի Ստ. Շահումյանի անվան կաշվի գործարանի կոլեկտիվը, որը նոյեմբերի 26-ին կատարեց համախառն արտադրանքի տարեկան պլանը։ Գործարանը մինչև տարվա վերջը երկրին կտա ավելի քան 4 միլիոն 500 հազար ռուբլու կաշվեղեն։*

✪ *1955 թվականը արտադրական բարձր ցուցանիշներով է փակում Երևանի հացի № 4 գործարանի կոլեկտիվը։ Տարեկան պլանը կատարված է նոյեմբերի 18-ին։ Անցած ամիսների ընթացքում աշխատանքի արտադրողականությունը գործարանում բարձրացել է 13 տոկոսով, արտադրանքի ինքնարժեքն իջել է 4,5 տոկոսով, տնտեսվել է 29 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա և 232 տոննա վառելանյութ։*

✪ *Տարեցտարի բնակչությանը ավելի շատ ընտիր տեսակի մետաքսյա գործվածք է տա-*

լիս Վ. Ի. Լենինի անվան Մետաքսագործվածքային ֆաբրիկան (Շահումյան ավան)։ Ֆաբրիկայի կոլեկտիվը 11 ամսվա արտադրական պլանը կատարել է 109,5 տոկոսով և պլանից դուրս երկրին տվել է 149 հազար մետր մետաքսյա գործվածք։ Պլանով նախատեսված 70 տոկոսի փոխարեն առաջին տեսակի արտադրանքը կազմում է 72 տոկոս։ Ինքնարժեքի իջեցման հաշվին ֆաբրիկան թողարկել է ավելի քան 400 հազար ռուբլու գործվածք։

✪ Երևանի Մուլինի գործարանի կոլեկտիվը 11 ամսվա պլանը կատարել է նոյեմբերի 5-ին։ Աշխատանքի արտադրողականությունը, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, բարձրացել է 16,4 տոկոսով, արտադրանքի ինքնարժեքն իջել է 10 տոկոսով։

✪ Երևանի Ձեթ-օճառ կոմբինատի օճառի գործարանի կոլեկտիվը ժամկետից շուտ կատարելով հնգամյա պլանը, պլանից դուրս երկրին տվեց ավելի քան 2.900 տոննա օճառ։ Գործարանում աշխատանքի արտադրողականությունը 11 ամսում բարձրացել է 16 տոկոսով։

✪ Այս տարվա 11 ամսում, անցած տարվա նույն ժամանակաշրջանի համեմատու-



թյամբ, Երևանի Մահուդի ֆաբրիկան երկրին տվել է 26.200 մետր ավելի արտադրանք։ Ֆաբրիկայի կոլեկտիվը արտադրանքի ինքնարժեքն իջեցրել է 5 տոկոսով։ Այստեղ համախառն արտադրանքի հնգամյա պլանը կատարվել է մայիսի 13-ին, իսկ պատրաստի արտադրանքինը՝ սեպտեմբերի 6-ին։

✪ Զանգեզուրի հանքվարչության «փոքր հանքի» կոլեկտիվը ժամկետից 3 ամիս շուտ կատարեց հինգերորդ հնգամյա պլանը։

✪ Լենինականի Մոլոտովի անվան Մանվածքային ֆաբրիկայի կոլեկտիվը նոյեմբերի 24-ին կատարեց հնգամյա պլանը։ Ֆաբրիկայում աշխատանքի արտադրողականությունը, 1950 թվականի համեմատությամբ, բարձրացել է 81 տոկոսով։ Ֆաբրիկան մինչև տարվա վերջը երկրին պլանից դուրս կտա ավելի քան 5 միլիոն 250 հազար ռուբլու արտադրանք։

✪ Լենինականի մետաղյա իրերի կոմբինատի կոլեկտիվը նոյեմբերի 29-ին կատարեց տարեկան պլանը։

✪ Արտադրանքի թողարկումը մեծ չափերով ավելացել է Լենինականի Մայիսյան ապստամբության անվան Տեքստիլ կոմբինատի Գործվածքային ֆաբրիկայում։ Անցած 10 ամսվա ընթացքում ֆաբրիկան պլա-

*նից դուրս թողարկել է 412 հազար մետր գործվածք։ Նույն ժամանակաշրջանում աշխատանքի արտադրողականությունը, պլանայինի համեմատությամբ, բարձրացել է 7,1 տոկոսով, տնտեսվել է 56 տոննա հումք։*

✪ *Ծավալելով պարտիայի XX համագումարի պատվին կազմակերպված սոցմրցությունը, խոշոր հաջողություններ են ձեռք բերել նաև գյուղատնտեսության բնագավառի աշխատողները։*

✪ *Ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններ բերքատվության և անասունների մթերատվության բարձրացման գծով այս տարի հասել են 1956—1960 թվականների համար նախատեսված մակարդակին։*

✪ *Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները ժամկետից շուտ կատարեցին հացահատիկի, բանջարեղենի, կարտոֆիլի, խաղողի պետական մթերումների պլանները։ Այս տարի կոլտնտեսությունները պետությանը ավելի շատ հացահատիկ, միս, ձու, բուրդ, ծխախոտ և այլ գյուղատնտեսական մթերքներ են հանձնել, քան անցյալ տարի։*

✪ *Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները ժամկետից շուտ կատարեցին բրդի մթերումների պլանները։ Այս տա-*



*րի, անցյալ տարվա համեմատությամբ, պետությանը 2,5 հազար ցենտներով ավելի բուրդ է հանձնված։*

✪ *Շահումյանի շրջանի կոլտնտեսություններում, անցյալ տարվա համեմատությամբ, այս տարի կովերի կաթնատվությունն ավելացել է 662 հազար կիլոգրամով։ Պարտիայի 18-րդ համագումարի անվան կոլտնտեսությունը յուրաքանչյուր կովից ստացել է 3.687 կիլոգրամ կաթ։*

*Շրջանի մի շարք կոլտնտեսություններում անընդհատ բարձրանում է դրամական եկամուտը։ Շահումյան ավանի Ստալինի անվան կոլտնտեսության դրամական եկամուտն այս տարի ավելացել է 800 հազար ռուբլով, Շենգավիթի Կալինինի անվան կոլտնտեսության եկամուտը՝ 144 հազար ռուբլով։*

✪ *Կրասնոսելսկի շրջանի ոչխարաբուծական տոհմային սովխոզի կոլեկտիվը մեծ չափերով բարձրացրել է ոչխարների բրդատվությունը։ Այստեղ յուրաքանչյուր ոչխարից ստացվել է 5,5 կիլոգրամ բուրդ, իսկ առանձին ոչխարներից՝ ավելի շատ։ Սովխոզի աշխատողները պարտավորվել են եկող տարի նրբագեղմ ցեղին պատկանող յուրաքանչյուր ոչխարից ստանալ 6 կիլոգրամ բուրդ և 100 մայր ոչխարից աճեցնել 130 գառ։*

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԻՆԴՈՒՍՏՐԱՑՄԱՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՎՐՈՊԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

Ի. ԴՈՒԴԻՆՍԿԻ

Նոր, սոցիալիստական հասարակարգի կառուցման համար մղվող իրենց պայքարում ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները ղեկավարվում են մեծ Լենինի այն հայտնի ցուցումով, որ սոցիալիզմը կարող է ստեղծվել միայն խոշոր մեքենայական արտադրության բազայի վրա։ Այդ երկրների կոմունիստական և բանվորական պարտիաները կենսագործում են սոցիալիստական ինդուստրացման քաղաքականություն, կուրս վերցնելով առավելագույն չափով, առաջին հերթին զարգացնել ծանր ինդուստրիան։

Սոցիալիստական ինդուստրացման քաղաքականությունը, որի ճշտությունը փայլուն կերպով հաստատվեց Սովետական Միության տնտեսական շինարարության



փորձով, ժողովրդական դեմոկրատիայի երկրների համար անհրաժեշտ նախադրյալներ է ստեղծում էկոնոմիկայի բոլոր ճյուղերի արագ վերելքի, գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման և իրենց պաշտպանունակության ամրապնդման համար։ Այդ քաղաքականությունը հնարավորություն է տալիս անընդհատ բարձրացնել աշխատավորների նյութական բարեկեցությունը և կուլտուրական մակարդակը։ Ծանր ինդուստրիայի աճման հետ մեկտեղ ժողովրդական դեմոկրատիայի երկրներում աճում և իր դիրքերն է ուժեղացնում բանվոր դասակարգը՝ սոցիալիզմի կառուցման համար մղվող պայքարում բոլոր աշխատավորների ղեկավարը։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրների սոցիալիստական ինդուստրացման հաջող կենսագործման համար հսկայական նշանակություն ունի նրանց փոխադարձ համագործակցությունը Սովետական Միության և միմյանց հետ։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրները լայնորեն օգտագործում են Սովետական Միության գիտա-տեխնիկական և կազմակերպական-տնտեսական բազմահարուստ փորձը, փոխադարձ հիմունքներով նրանք մեր երկրից ստանում են արդյունա-

բերական սարքավորում, դեֆիցիտային հումք և այլ նյութեր իրենց ֆաբրիկաների և գործարանների համար։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրների ժողովրդական տնտեսության զարգացման հաջողություններին զուգընթաց՝ աճում, ընդլայնվում և գնալով ավելի մեծ նշանակություն են ստանում այդ երկրների միջև հաստատված տնտեսական փոխադարձ կապերը։

Հենվելով ամբողջ սոցիալիստական լագերի բազմահարուստ տնտեսական ռեսուրսների վրա, սոցիալիզմի լագերի բոլոր երկրների սերտ համագործակցության և եղբայրական փոխադարձ օգնության վրա, ժողովրդական դեմոկրատիայի յուրաքանչյուր պետություն հնարավորություն ունի ավելի հեշտությամբ և արագ կերպով ստեղծել իր հայրենական ծանր արդյունաբերությունը, հաջողությամբ առաջ ընթանալ սոցիալիստական ինդուստրացման ուղիով։

Սոցիալիստական ինդուստրացման քաղաքականության հետևողական կենսագործման շնորհիվ ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրների աշխատավորները ստեղծեցին ժամանակակից ծանր ինդուստրիա։ Առմիշտ վերացվեց արդյունաբերական հետամնացությունը, որը անցյալում մի



անեծք էր Արևելյան Եվրոպայի երկրների համար, մեկն այն կարևորագույն պատճառներից, որոնք ծնում էին այդ երկրների տնտեսական և քաղաքական կախվածությունը իմպերիալիստական պետություններից։

Ժողովրդական իշխանության տարիներին Լեհաստանը և Հունգարիան դարձան ինդուստրիալ պետություններ։ Լեհաստանում 1954 թվականին արդյունաբերական արտադրանքի բաժինը երկրի արդյունաբերական և գյուղատնտեսական ընդհանուր արտադրանքի մեջ կազմեց 79 տոկոս՝ 1937 թվականի 48 տոկոսի փոխարեն։ Հունգարիայում արդյունաբերական արտադրանքի տեսակարար կշիռը ամբողջ ժողովրդական տնտեսության համախառն արտադրանքի մեջ աճեց և 1938 թվականի 44 տոկոսից 1954 թվականին հասավ գրեթե 80 տոկոսի։

Ռումինիան և Բուլղարիան ագրարային երկրներից դարձան ինդուստրիալ-ագրարային պետություններ։ Նրանց ընդհանուր արտադրանքի մեջ արդեն արդյունաբերության բաժինը բարձր է գյուղատնտեսության բաժնից։

Խիստ աճել է ժողովրդական Չեխոսլովակիայի ինդուստրիալ հզորությունը։ 1937 թվականին Չեխոսլովակիայի ժողովրդական

տնտեսության ամբողջ արտադրանքի մեջ արդյունաբերության բաժինը կազմում էր 58 տոկոս, իսկ 1953 թվականին հասավ 83,7 տոկոսի։

## Մետալուրգիական և ածխային արդյունաբերության արագ զարգացումը

Ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրներում այժմ ստեղծված է հայրենական ածխա-մետալուրգիական բազա։

Այդ մասին պերճախոս կերպով վկայում են ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական որոշ երկրներում պողպատի ձուլման և ածխի հանույթի վերաբերյալ հետևյալ տվյալները.

Պողպատի ձուլումը *(հազար տոննաներով)*

| | 1938 թվականին | 1954 թվականին |
|---|---|---|
| Լեհաստան | 1.441 | 4.000 |
| Չեխոսլովակիա | 2.300 | 4.400 |
| Հունգարիա | 647 | 1.491 |
| Ռումինիա | 277 | 720 |

Ածխի հանույթը *(հազար տոննաներով)*

| | 1938 թվականին | 1954 թվականին |
|---|---|---|
| Լեհաստան | 38.000 | 91.600 |
| Չեխոսլովակիա | 34.700 | 60.500 |
| Հունգարիա | 9.400 | 22.000 |
| Ռումինիա | 2.900 | 6.100 |



Ժողովրդական իշխանության տարիներին Լեհաստանում վերակառուցվել ու կառուցվել է 13 դոմենյան վառարան և մոտ 30 մարտենյան վառարան, գործարկվել է 9 գլանագործարան։ Ներկայումս Նովայա Գուտայում, Կրակովի մոտ, կառուցվում է Վ. Ի. Լենինի անվան մետալուրգիական կոմբինատը, որը լրիվ գործարկվելուց հետո արտադրելու է ավելի շատ պողպատ, քան արտադրում էին նախապատերազմյան Լեհաստանի բոլոր 23 մետալուրգիական գործարանները՝ միասին վերցրած։ Կոմբինատում արդեն գործում են երկու դոմենյան վառարաններ և սկսված է պողպատի թողարկումը։ Ժողովրդական կառավարությունը հսկայական նշանակություն է տալիս նաև ածխարդյունաբերության հետագա զարգացմանը։ Արդեն այժմ Լեհաստանը բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող ածխի հանույթով ընդհուպ մոտենում է Անգլիայում ձեռք բերված մակարդակին, այն ժամանակ, երբ նա պատերազմից առաջ գրեթե հինգ անգամ ետ էր Անգլիայից։

Նոր Չեխոսլովակիայում պողպատի ձուլումը, նախապատերազմյան ժամանակաշրջանի համեմատությամբ, աճել է գրեթե երկու անգամ։ Մետալուրգիական հին գոր-

ծարանների վերակառուցման հետ միասին, այստեղ կառուցվել է մետալուրգիական մի մեծ կոմբինատ Կունիցիում, Օստրավայի մոտ։ Առաջին հնգամյակի տարիներին գործարկվել են 6 դոմենյան վառարան, 9 մարտենյան վառարան, 8 գլանագործարան։

Մետալուրգիական և ածխային արդյունաբերությունը արագ տեմպերով զարգանում է նաև Ժողովրդական Հունգարիայում։ Այստեղ այժմ 2,5 անգամ շատ չուգուն և պողպատ է արտադրվում, քան պատերազմից առաջ։ Վերջին տարիներին հսկայական աշխատանք է տարվել Դիոշդյեր և Օզդ քաղաքների մետալուրգիական հին գործարանների և Ռակոշիի անվան կոմբինատի մետալուրգիական գործարանի վերակառուցման ուղղությամբ, մետալուրգիական կոմբինատ է ստեղծվել Ստալինվարոշում։ 1950 թվականից մինչև 1954 թվականն ընկած ժամանակաշրջանում ածխի հանույթը երկրում աճեց 11,3 միլիոն տոննայով, որը շատ ավելի է նախապատերազմյան ժամանակաշրջանում ածխի տարեկան միջին հանույթից։

Ռումինիայում չուգունի և պողպատի ձուլումը, նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ, աճել է ավելի քան երկու անգամ, իսկ ածխի հանույթը՝ երկու անգամ։



Բուլղարիայում 1953 թվականին գործարկվեց Վ. Ի. Լենինի անվան մետալուրգիական գործարանը, որն առաջինն է երկրում։ 1954 թվականին երկրում ածխի հանույթը գերազանցեց նախապատերազմյան մակարդակը գրեթե չորս անգամ։

Ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրների կոմունիստական և բանվորական պարտիաները առանձնահատուկ նշանակություն են տալիս էլեկտրաէներգիայի ամեն կերպ զարգացմանը։ Նրանք գիտեն, որ առանց էլեկտրականության անհնարին կլիներ նոր հասարակարգի արտադրա-տեխնիկական բազայի ստեղծումը։ Ներկայումս ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրները մի քանի անգամ շատ էլեկտրաէներգիա են արտադրում, քան արտադրվում էր պատերազմից առաջ։

**Էլեկտրաէներգիայի արտադրությունը ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական որոշ երկրներում**

*(միլիոն կիլովատ-ժամերով)*

| | 1938 թվականին | 1954 թվականին |
|---|---|---|
| Լեհաստան | 3.900 | 15.500 |
| Չեխոսլովակիա | 4.100 | 13.600 |
| Հունգարիա | 1.400 | 4.800 |
| Ռումինիա | 1.100 | 3.800 |

Ժողովրդական Լեհաստանը ծածկված է էլեկտրակայանների լայն ցանցով։ Անցյալ տարվա կեսերին երկրում էլեկտրակայանների թիվը հասնում էր 235-ի։ Կառուցվել և շահագործման են հանձնվել այնպիսի խոշոր էլեկտրակայաններ, ինչպիսիք են՝ Դիխովայի հիդրոէլեկտրակայանը (Բուբր գետի հոսանքի ստորին շրջանում), Սիլեզիայի «Մեխովիցե» և «Ջարժե» ջերմաէլեկտրակայանները, Կրակովի վոեվոդության «Յավոժնո—1» և «Յավոժնո—2» և շատ ուրիշ էլեկտրակայաններ։

Չեխոսլովակիայում բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությունը, նախապատերազմյան ժամանակաշրջանի համեմատությամբ, աճել է գրեթե չորս անգամ։ 1937 թվականին Չեխոսլովակիայում բնակչության յուրաքանչյուր շնչին 71 տոկոսով քիչ էլեկտրաէներգիա էր ընկնում, քան Ֆրանսիայում, և 28 տոկոսով քիչ, քան Իտալիայում։ Առաջին հնգամյակից հետո, որի ընթացքում երկրում կառուցվեցին 12 խոշոր էլեկտրակայաններ, պատկերը խիստ փոխվեց։ 1953 թվականին Չեխոսլովակիայում բնակչության յուրաքանչյուր շնչին 30 տոկոսով շատ էլեկտրա-



էներգիա էր ընկնում, քան Իտալիայում և 6 տոկոսով շատ, քան Ֆրանսիայում։

Հունգարիայում հնգամյա պլանի տարիներին կառուցվեցին մի շարք նոր էլեկտրակայաններ և ավելացվեց հին էլեկտրակայանների կարողությունը։ Դրա շնորհիվ երկրում էլեկտրաէներգիայի արտադրությունը, 1949 թվականի համեմատությամբ, կրկնապատկվեց, իսկ 1938 թվականի համեմատությամբ՝ ավելացավ գրեթե 3,5 անգամ։

Էլեկտրիֆիկացման տասնամյա պլանին համապատասխան, շատ էլեկտրակայաններ են կառուցվել և վերակառուցվել Ռումինիայում։ 1950 թվականի համեմատությամբ, 1954 թվականին ռումինական էլեկտրակայանների սահմանված կարողությունն ավելացավ ավելի քան մեկ և կես անգամ, հասնելով ավելի քան մեկ միլիոն կիլովատի։

1954 թվականի սկզբներին Բուլղարիայում բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող էլեկտրաէներգիայի քանակը 5,3 անգամ բարձր էր 1944 թվականի մակարդակից։

Ալբանիայում 1954 թվականին բնակչության յուրաքանչյուր շնչին 25 անգամ շատ էլեկտրաէներգիա էր ընկնում, քան պատերազմից առաջ։

Անընդհատ զարգացնելով իրենց հայրե-

նական էներգետիկան, ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրները հնարավորություն ստացան էլեկտրականությունը ավելի լայնորեն արմատավորելու ոչ միայն արդյունաբերության, այլև գյուղատնտեսության մեջ, ինչպես նաև կենցաղում։

## Հումքի բազայի ամրապնդումն ու ընդլայնումը

Նոր հասարակարգում, որը կապանքներից ազատեց աշխատավորների կաշկանդված ստեղծագործական ուժերը, ժողովրդական դեմոկրատիայի երկրները չտեսնված հնարավորություններ ստացան իրենց արդյունաբերական-հումքի բազայի զարգացման համար։ Օրինակի համար, վերցնենք Հունգարիան։ Առաջ մետալուրգիայի զարգացման համար այստեղ լուրջ խոչընդոտ էր հանդիսանում կոքսային ածխի բացակայությունը։ Հունգարիայում ժողովրդական իշխանության օրոք հաջողությամբ լուծվում է տեղական ածխի կոքսացման պրոբլեմը։ Հսկայական առաջընթաց քայլ է արվել բոքսիտների արտադրության ասպարեզում։ Հնգամյակի տարիներին բոքսիտների արտադրությունն ավելացել է 2,5 անգամ, իսկ ալյումինի արտադրության համար անհրաժեշտ կիսա-



ֆաբրիկատի՝ կավահողի արտադրությունն աճել է 4,3 անգամ։ Նույն ժամանակամիջոցում երկրի նավթի հանույթն աճել է 2,4 անգամ։

Ռումինիայում հսկայական մասշտաբներով ծավալված հետախուզական աշխատանքների շնորհիվ բացվել են մոտ երկու տասնյակ նոր նավթահանքեր։ Դա հնարավորություն տվեց ռումինական նավթագործներին 1954 թվականին արտադրելու 9,7 միլիոն տոննա նավթ, որը շատ ավելի բարձր է նավթի հանույթի նախապատերազմյան մակարդակից։

Էական չափով ընդլայնվել է ժողովրդական Լեհաստանի հումքի բազան։ Արագորեն աճում է պղնձի, երկաթի, կապարի-ցինկի և քիմիական հանքանյութի շատ տեսակների հանույթը։

Չեխոսլովակիայում ժողովրդական իշխանության տարիներին զգալիորեն ավելացել է երկաթհանքի, նավթի, գունավոր մետաղների հանքանյութի արտադրությունը։ Խոշոր չափով աճել է արհեստական մանրաթելի, սինթետիկ վառելանյութի, պլաստմասսայի և դեֆիցիտային հումքի այլ փոխանակիչների արտադրությունը։

Սակայն ժողովրդական դեմոկրատիայի

եվրոպական երկրների հումքի բազան, ծանր ինդուստրիայի աճող պահանջների համեմատությամբ դեռևս անբավարար է։ Հումքի բազայի ետ մնալը արագորեն հաղթահարելու համար ժողովրդական իշխանությունը, կոմունիստական և բանվորական պարտիաները նշել և հաջողությամբ կենսագործում են մի ամբողջ շարք միջոցառումներ ածխի, նավթի, սև և գունավոր մետաղների հանքանյութի արտադրությունն ավելացնելու ուղղությամբ, արագացնում են նոր հանքահորերի, հարստացուցիչ ֆաբրիկաների, դեֆիցիտային հումքի փոխանակիչներ արտադրող գործարանների շինարարության տեմպերը։

## Մեքենաշինության բուռն աճը

Սոցիալիստական ինդուստրացման պրոցեսում, ինչպես հայտնի է, վճռական դեր է պատկանում մեքենաշինությանը։ Այն կոչված է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերն ապահովելու ժամանակակից մեքենաներով, դազգահներով, սարքավորումով և գործիքներով։ Ուստի ժողովրդական դեմոկրատիայի երկրների կոմունիստական և բանվորական պարտիաները հսկայական ուշադրություն են նվիրում մեքենաշինության



զարգացմանը։ Դրա շնորհիվ էլ այդ երկրներում մեքենաշինական արդյունաբերությունը ավելի արագ տեմպերով է զարգանում։

Լեհաստանում ժողովրդական իշխանության տարիներին ստեղծվել են արտադրության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ նավաշինական արդյունաբերությունը, ավտոմոբիլաշինությունը, տրակտորային արդյունաբերությունը, գյուղատնտեսական մեքենաշինությունը, ծանր դազգահների, լեռնային, մետալուրգիական, էներգետիկ, քիմիական, տեքստիլ և այլ տեսակի սարքավորման, գնդակավոր առանցքակալների, ճշգրիտ և օպտիկական գործիքների արտադրությունը։ Ներկայումս Լեհաստանում տասն անգամ շատ մեքենաներ է արտադրվում, քան պատերազմից առաջ։ 1954 թվականին Լեհաստանի սոցիալիստական արդյունաբերության ամբողջ արտադրանքի մեջ մեքենաշինության բաժինը կազմեց ավելի քան 22 տոկոս։

Չեխոսլովակիայի մեքենաշինական արդյունաբերության արտադրանքը հնգամյակի ընթացքում ավելի քան կրկնապատկվեց, իսկ նրա տեսակարար կշիռը ընդհանուր արդյունաբերական արտադրության մեջ աճեց

1948 թվականի 17 տոկոսից 1953 թվականին հասնելով 27,8 տոկոսի։ Ի լրացումն մեքենաշինական հին գործարանների, որոնցից շատերը արմատական վերակառուցման են ենթարկվել, Չեխոսլովակիայում հնգամյակի ընթացքում կառուցվել է մեքենաշինական 24 նոր գործարան։ Էապես փոխվել է նաև երկրի մեքենաշինական արդյունաբերության կառուցվածքը, որի հիմքը դարձել է ծանր մեքենաշինությունը։ Հնգամյակի տարիներին մի քանի անգամ ավելացել է շոգետուրբինների, դիզելների, խոշոր տրանսֆորմատորների, ամբարձիչների արտադրությունը։

Ինդուստրացման պրոցեսում զգալի վերակառուցման ենթարկվեց Հունգարիայի մեքենաշինական արդյունաբերությունը։ Նրա արտադրանքի ծավալը 1950—1954 թվականներին աճեց 3,7 անգամ։ Փաստորեն նոր են ստեղծվել արդյունաբերության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են՝ մեքենաշինությունը, ավտոմոբիլաշինությունը, տրակտորաշինությունը, ժամանակակից գյուղատնտեսական մեքենաների, լեռնային և շինարարական սարքավորման արտադրությունը։

Ռումինիայում ինդուստրացման տարիներին ստեղծվել են հայրենական դազգահա-



շինություն, տրակտորաշինություն, գնդակավոր առանցքակալների արտադրություն, գյուղատնտեսական մեքենաշինություն, նավթի հանույթի և վերամշակման համար անհրաժեշտ սարքավորման արտադրություն, էլեկտրատեխնիկական արդյունաբերություն, տեքստիլ արդյունաբերության և այլ ճյուղերի համար անհրաժեշտ մեքենաների արտադրություն։ Չափազանց բնորոշ է, որ Ռումինիայում, անցյալում տնտեսապես հետամնաց այդ երկրում, 1948—1953 թվականներին մետաղամշակման և մեքենաշինական արդյունաբերության մեջ տեղադրված ամբողջ սարքավորման գրեթե կեսը հայրենական արտադրության սարքավորում է։

Նշանակալից հաջողությունների է հասել բուլղարական մեքենաշինությունը։ 1938 թվականի համեմատությամբ մետաղամշակման արդյունաբերության արտադրանքի թողարկումն 1953 թվականին ավելացավ 27 անգամ։

---

# ՀՆԴԿԱՍՏԱՆ

*Հնդկաստանը աշխարհի հնագույն և մեծ տերությունններից մեկն է։ Նրա տարածությունը կազմում է մոտ 3 միլիոն քառակուսի կիլոմետր, բնակչությունը՝ մոտ 376 միլիոն մարդ։ Մայրաքաղաքն է Դելին, որն ունի մեկ ու կես միլիոն բնակիչ։ Հնդկաստանի խոշորագույն քաղաքներն են՝ Բոմբեյը, Կալկաթան, Մադրասը, Ահմադաբադը, Հայդարաբադը։*

*Հնդիկ ժողովրդի պատմությունը օտար նվաճողների դեմ դաժան ու արյունալի և դասակարգային պայքարի պատմություն է։ Սակայն բոլոր նվաճողները հնդիկ ժողովրդին չպատճառեցին այնքան զոհեր ու տանջանքներ, որքան անգլիական գաղութարարները իրենց երկուհարյուրամյա տիրապետության ընթացքում։*

*Անգլիական գաղութարարները կողոպտում էին հնդիկ ժողովրդին, երկրից տանում թեյը, բամբակը, բուրդը, բրինձը, սովի ու կարիքի մեջ թողնելով աշխատավորական մասսաներին։ Գաղութարարների օրոք սովը և հիվանդությունները մշտական երևույթ էին Հնդկաստանում։ Ժամանակակիցներից մեկը խոսելով Հնդկաստանում անգլիական առևտրի մասին,*



*դիպուկ կերպով նկատել էր «Առևտրի պատմության մեջ հազիվ թե գտնվի նմանօրինակ դժբախտություն։ Հնդկաստանի հարթավայրերում սպիտակին են տալիս բամբակագործների ոսկորները»։*

*Ռուսաստանում Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը պայքարի հանեց ինչպես բոլոր գաղութային ու կախյալ երկրների ստրկացված ժողովուրդներին, այնպես էլ հնդիկ ժողովրդին՝ իր անկախության և ազատության համար։ 1930 թվականի մայիսին ապստամբություն բռնկվեց Պեշավարում, գյուղացիական հուզումներ սկսվեցին Քաշմիրում, Հյուսիս-արևմտյան սահմանամերձ շրջաններում։ Բոմբեյը, Ահմադաբադը, Մադրասը և այլ արդյունաբերական քաղաքներ դարձան գործադուլների և ցույցերի թատերաբեմ։*

*Երկրորդ համաշխարհային պատերազմում Սովետական Զինված Ուժերի հաղթանակը գերմանական ֆաշիզմի և յապոնական միլիտարիզմի նկատմամբ նպաստեց մինչև այդ պատմության մեջ չտեսնված ազգային-ազատագրական պայքարի նոր վերելքի բռնկմանը գաղութային ու կախյալ երկրներում, որը ավելի սրեց իմպերիալիզմի գաղութային սիստեմի ճգնաժամը։ 1946 թվականին բռնկվեց Բոմբեյի ծովայինների գործադուլը, որը վերածվեց զինված ապստամբության։ Այդ նույն ժամանակ երկրի Արևելյան զանազան մասերում գյուղացիական ապստամբություններ բռնկվեցին։ Վախենալով ժողովրդական հուզումներից, Անգ-*

լիան 1947 թվականի օգոստոսի 15-ին Հնդկաստանին տվեց Դոմինյոնի իրավունք։ Կրոնական սկզբունքով երկիրը նախապես բաժանվեց երկու պետության՝ Հնդկաստանի ու Պակիստանի։ Այս բաժանումով Անգլիան նպատակ ուներ Հնդկաստանում պահպանել իր գաղութային տիրապետությունը։

Հնդկաստանի՝ որպես անկախ պետության, զարգացման գործում կարևոր իրադարձություն էր 1950 թվականի հունվարի 26-ին Կոնստիտուցիայի ուժի մեջ մտնելը, որի համաձայն երկիրը դարձավ սուվերեն ռեսպուբլիկա, որը, սակայն մնաց Ազգերի Բրիտանական համագործակցության մեջ։

Պառլամենտը բաղկացած է երկու պալատից՝ ստորին կամ Ժողովրդական պալատ, որտեղ կա 500 դեպուտատ, որից 2 հոգի նշանակվում են պրեզիդենտի կողմից, իսկ մյուսները ընտրվում են ընդհանուր, գաղտնի և ուղղակի քվեարկության միջոցով։ Վերին պալատը՝ Նահանգների խորհուրդը, բաղկացած է 207 հոգուց, որոնք ընտրվում են Նահանգների օրենսդիր ժողովների կողմից, իսկ 12 հոգին նշանակվում են պրեզիդենտի կողմից։

Հնդկաստանում կան մի շարք քաղաքական պարտիաներ։ Համահնդկական ազգային կոնգրեսը, որը հիմնադրվել է 1885 թվականին, ամենաազդեցիկ և բազմամարդ պարտիան է երկրում եղած մյուս բուրժուական պարտիաների մեջ։ 1952 թվականի սկզբից նա հանդիսանում է կառավարական պարտիա։



Հնդկաստանի Կոմունիստական պարտիան ստեղծվել է 1933 թվականին, իսկ մինչ այդ, դեռևս 1920-ական թվականներին, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ազդեցության տակ Հնդկաստանում ստեղծվել էին կոմունիստական խմբակներ։ 1943 թվականին կայացավ Հնդկաստանի Կոմպարտիայի առաջին համագումարը։

Հնդկաստանը բազմազգ երկիր է։ Այնտեղ ապրում են հինդուսներ, փենջաբցիներ, բիխարցիներ, ռաջացիներ, բենգալցիներ, օրիսացիներ, ասամցիներ, քաշմիրցիներ և այլն։ Յուրաքանչյուր ժողովուրդ ունի իր ազգային կուլտուրան, սովորությունները, բարքերը, լեզուն և գիրը։

Անգլիական երկու հարյուրամյա գաղութային տիրապետությունը խիստ բացասաբար ազդեց Հնդկաստանի տնտեսության զարգացման վրա։ Անցյալի ժառանգությունը վերացնելու համար Հնդկաստանի կառավարությունը, մասնավորապես նրա պրեմյեր-մինիստր Ներուն, իր ջանքերն ուղղում է ազգային էկոնոմիկայի զարգացմանը և առաջին հերթին գյուղատնտեսական և տնայնագործական արտադրության ավելացմանը։ Այդ կարևոր խնդիրը լուծելու համար Հնդկաստանի կառավարությունը մշակեց առաջին հնգամյա պլանը (1951—1956 թ. թ.)։ Հնդկական կառավարությունը այդ պլանով ցանկանում է երկրում ստեղծել գյուղատնտեսական մթերքների առատություն, որպեսզի հնարավորություն ունենա կրճատելու ներմուծ-

վող մթերքների չափը և տնտեսված գումարով արտասահմանից գնել արդյունաբերական սարքավորումներ։

Հնդկական կառավարությունը համարյա բոլոր նահանգներում անց է կացրել հողային ռեֆորմ, սակայն այդ ռեֆորմը արմատական չէ, քանի որ կալվածատերերի ձեռքին մնում է իրենց հողերի 20—25 տոկոսը։ Այնուամենայնիվ այդ ռեֆորմը որոշ պայմաններ է ստեղծում գյուղատնտեսության զարգացման համար։

Երկրում լայն տարածում է ստացել, այսպես կոչված «Հողը կամավոր կերպով հողազուրկ գյուղացիների օգտին զոհելու» շարժումը, որը գլխավորում է Գանդիի հետևորդ Բխուդան Յաջնին։

Առաջիկա 15 տարվա ընթացքում նախատեսված է ջրովի հողերի տարածությունը ավելացնել մեկ ու կես անգամ՝ 50-ից մինչև 75 միլիոն ակր։ Նախատեսված մի շարք միջոցառումների շնորհիվ Հնդկաստանում հացահատիկի արտադրությունը ընթացիկ տարում կազմեց 55,3 միլիոն տոննա, գերազանցելով առաջին հնգամյակով նախատեսված պլանը 2,8 միլ. տոննայով։ Բամբակի արտադրությունը 1954—1955 թվականին հասավ 4,3 միլիոն հակի՝ գերազանցելով առաջին հնգամյա պլանով նախատեսվածը։

Հնդկաստանի կառավարությունը իր մերձավոր և կարևորագույն խնդիրն է համարում ազգային արդյունաբերության զարգացումը՝ որպես երկրի անկախության հիմքի։ Արդյունաբերության զարգացման



համար Հնդկաստանն ունի բնական հսկայական պաշարներ։

Այժմ Հնդկաստանում մեծ աշխատանք է կատարվում երկրի բնական հարստություններն օգտագործելու, արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը զարգացնելու ուղղությամբ։

1956—1961 թ. թ. ժողովրդական տնտեսության մեջ կատարվելու են 56 միլիարդ ռուփի կապիտալ ներդրումներ, որից միայն 26 տոկոսը ներդրվելու է արդյունաբերության մեջ։

Նախատեսված պլանով 1961 թվականին Հնդկաստանում այժմ արտադրվող 37 միլիոն տոննայի փոխարեն կարտադրվի 60 միլիոն տոննա քարածուխ, 1 միլիոն տոննայի փոխարեն 5 միլիոն տոննա պողպատ, 5 հազար տոննայի փոխարեն 40 հազար տոննա ալյումին, 4,5 միլիոն տոննայի փոխարեն 10 միլիոն տոննա ցեմենտ, 190 հազար տոննայի փոխարեն 760 հազար տոննա պարարտանյութ։ Ֆաբրիկա-գործարանային, ներառյալ լեռնագործական բանվորների թիվը 1961 թվականին, համեմատած 1955 թվականի հետ, կավելանա 42 տոկոսով։

Հնդկաստանում ծանր ինդուստրիայի զարգացման համար 1955 թվականի մայիսին ստեղծվեց սև մետալուրգիայի մինիստրություն։

Հնդկական կառավարությունը մեծ ուշադրություն է դարձնում Բհակրա-Նանգալ, Հիրակուդի և Դամոդարի հիդրոկառուցվածքների շինարարությանը, որոնք

էլեկտրաէներգիա կմատակարարեն երկրի արդյունաբերական ձեռնարկություններին և առատ ջուր կտան դաշտերին։ Մոտակա 4—5 տարում նախատեսված է կառուցել 3 պողպատաձուլական գործարան։ Այդ գործարաններից մեկը, որը տարեկան թողարկելու է մեկ միլիոն տոննա պողպատ, կառուցվում է Սովետական Միության օգնությամբ։ Սակայն արևմտյան ռեակցիոն շրջանները ճգնում են խանգարել Հնդկաստանի էկոնոմիկայի զարգացմանը։ Անգլիական կապիտալիստները մինչև այսօր էլ չեն հրաժարվել Հնդկաստանը որպես իրենց ագրարային-հումքային կցորդը պահելու մտքից։ Բացի անգլիական գաղութարարներից Հնդկաստանի հարստությունների նկատմամբ մեծ ախորժակ ունեն նաև ամերիկյան մոնոպոլիաները։ Նրանք ձգտում են Հնդկաստանը դարձնել ոչ միայն իրենց շուկան, այլև որպես ռազմական պլացդարմ։ Արևմտյան երկրների բռնած հանցավոր դիրքի հետևանքով մինչև հիմա Հնդկաստանի ազգային տերիտորիա հանդիսացող Գոան, որին տզրուկի նման կպել են Պորտուգալական գաղութարարները, չի ազատագրված։ Բայց հեռու չէ այն օրը, երբ հնդիկ ժողովուրդը կազատագրի այն օտարերկրյա իմպերիալիստներից։

Հնդկաստանը պայքարում է միջազգային խաղաղության և անվտանգության ամրապնդման համար։ Ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը ըստ արժանավույն գնահատեց Հնդկաստանի խոշոր ավանդը Կորեայում ու Հնդկաչինում պատերազմական գործողությունների



դադարեցման գործում, նրա ներկայացուցիչների ելույթները Ասիայի ու երկրագնդի մյուս շրջանների խաղաղության ամրապնդման հարցերին նվիրված միջազգային կոնֆերանսներում։

Հնդկաստանը հանդիսացավ Ասիայի ու Աֆրիկայի երկրների կոնֆերանսի հրավիրման նախաձեռնողներից մեկը։ Գնալով ավելի են ամրապնդվում սովետա-հնդկական հարաբերությունները։ Այդ հարաբերությունները հիմնված են միմյանց տերիտորիալ ամբողջականությունն ու սուվերենությունը փոխադարձաբար հարգելու, չհարձակվելու, տնտեսական, քաղաքական կամ իդեոլոգիական բնույթի որևէ պատճառաբանությամբ՝ միմյանց ներքին գործերին չմիջամտելու, հավասարության ու փոխադարձ շահավետության, խաղաղ գոյակցության սկզբունքների վրա։ Դրանք պերճախոս կերպով հաստատում են սոցիալ-քաղաքական տարբեր սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության ու համագործակցության հնարավորության վերաբերյալ մեծ Լենինի կողմից հռչակված սկզբունքների ճշտությունը։ Ջավահարլալ Ներուի և Սովետական ղեկավարների՝ Ն. Ա. Բուլգանինի և Ն. Ս. Խրուշչևի փոխադարձ այցելությունները ավելի ամրապնդեցին այդ երկու երկրների ժողովուրդների բարեկամությունը։

# Ց Ա Ն Կ

## «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-ՈՒՄ 1955 ԹՎԱԿԱՆԻՆ ՏՊԱԳՐՎԱԾ ՆՅՈՒԹԵՐԻ

### ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ԱԳԻՏԱՑԻՈՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁԻՑ







ԱՌԱՋԱՎՈՐՆԵՐԻ ՓՈՐՁԻՑ

## ՄԵԹՈԴԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ



## ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ
(Թվեր և փաստեր)

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ







## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

## ՊԱՏԱՍԽԱՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՀԱՐՑԵՐԻՆ



## ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ



## ԱՇԽԱՐՀԻ ՔԱՐՏԵԶԻ ԱՌԱՋ



---

## СОДЕРЖАНИЕ

### В ПОМОЩЬ РУКОВОДИТЕЛЯМ АГИТКОЛЛЕКТИВОВ



### ИСПОЛЬЗУЙ ВО ВРЕМЯ БЕСЕДЫ



### В СТРАНАХ НАРОДНОЙ ДЕМОКРАТИИ



### СПРАВОЧНЫЙ ОТДЕЛ



### ПЕРЕЧЕНЬ






Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

**Отдел Пропаганды и агитации ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**1955 г.**
**№ 24**

*ՎՖ 14229* *Պատվեր 1065* *Տիրաժ 8570*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*
*Գինը 50 կոպ.։*